Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 33—86։*





1947 թ. սեպտեմբերի 7-ին նշվելու է Սովետական Միության մայրաքաղաք Մոսկվայի հիմնադրման 800-ամյակը։ Ստորև տպագրում ենք նյութեր զրույցների համար։

## ՄՈՍԿՎԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ԿԵՆՏՐՈՆՆ Է

*Մոսկվայի նշանակությունը մեր Հայրենիքի կյանքում բացառիկ կերպով մեծ է։ Մոսկվան Սովետական Միության ոչ միայն քաղաքական, կուլտուրական ու գիտական կենտրոնն է, այլև խոշորագույն ինդուստրիալ քաղաքը։ Մայրաքաղաքի արդյունաբերության աշխատանքի յուրաքանչյուր օրը երկիրը հարստացնում է հսկայական քանակությամբ ամեն տեսակի նյութական արժեքներով։ Հայրենական Մեծ պատերազմից մեկ տարի առաջ Մոսկվան յուրաքանչյուր օր արտադրում էր 220 բեռնատար ավտոմոբիլ, 15 մարդատար ավտոմոբիլ,*

800 հեծանիվ, 300 հազար էլեկտրական լամպ, 55 հազար զույգ կոշիկ, 63 հազար մետր բրդե գործվածքներ, 120 հազար մետր մետաքսեղեն, հարյուր հազարավոր մետր բամբակե գործվածքներ։ 1939 թվականին հենց միայն Մոսկվայի արդյունաբերությունը տվեց 2,5 միլիարդ ռուբլով ավելի արտադրանք, քան տալիս էր ամբողջ ցարական Ռուսաստանի արդյունաբերությունը իր ամենաբարձր վերելքի տարիներին։

Ներկայումս, երբ Սովետական Միությունը դարձել է հզոր ինդուստրիալ տերություն, երբ նրա ընդարձակ տարածությունների վրա կառուցվել են հազարավոր վիթխարի ձեռնարկություններ, այնուամենայնիվ ամբողջ երկրի արդյունաբերական արտադրանքի յոթերորդ մասը տալիս են մայրաքաղաքի ֆաբրիկաներն ու գործարանները։

Մոսկվայի արդյունաբերության ծնունդը վերաբերում է 15—16-րդ դարերին։ Այն ժամանակ քաղաքը բաղկացած էր Կրեմլից և նրան հարակից հրապարակներից, որտեղ էլ հենց սկսեցին զարգանալ արհեստները։

Մինչև 18-րդ դարի վերջը Մոսկվան դեռ նման էր մի մեծ գյուղի, անկանոն ցրված աղնվատիրական ագարակներով։ Բայց քա-



ղաքի ծայրամասերում արդեն առաջ էին գալիս այսպես կոչվող մանուֆակտուրաները—դրանք խոշոր ձեռնարկություններ էին, որոնք գործում էին մահուդ, մետաքսյա կտորեղեն, կտավ, չիթ, պատրաստում էին ներկեր, ապակյա իրեր։ Ներկա դարի սկզբին Մոսկվան արդեն դարձել էր զարգացած արդյունաբերություն ունեցող քաղաք։ Բայց այնտեղ գերակշռում էին տեքստիլ ձեռնարկությունները, հատկապես բամբակե գործվածքեղենի ֆաբրիկաները։ Ահա թե ինչու հին Մոսկվան անվանում էին «չթի Մոսկվա»։ Քաղաքում կային նաև մետաղամշակման ձեռնարկություններ, բայց դրանք մեծ չէին և, բացի դրանից, այդ ձեռնարկությունների մեծամասնությունը ամբողջապես կամ մասամբ պատկանում էր օտարերկրյա կապիտալիստներին։

Ռուսաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի նախօրյակին գնահատվում էր 11 միլիարդ ռուբլի։ Մոսկվայում կենտրոնացված արդյունաբերությունը այդ 11 միլիարդից տալիս էր մոտավորապես մեկ միլիարդ ռուբլին։ Այլ կերպ ասած, Մոսկվայի տեսակարար կշիռը Ռուսաստանի արդյունաբե-

ռությա՛ն մեջ կազմում էր 9 տոկոսից մի փոքր պակաս։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո սովետական ժողովուրդը, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, վերականգնեց ավերված տնտեսությունը և ձեռնամուխ եղավ վիթխարի խնդրի իրագործման —երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի՛ն։ Առանց դրան անհնարին էր ապահովել Սովետական Միության անկախությունը իմպերիալիստական պետություններից։

Սովետական երկիրը պետք է սկսեր Ուրալի, Սիբիրի, Հեռավոր Արևելքի ամենահարուստ ընդերքի մշակումը, պետք է բարձրացներ տնտեսությունը Ծայրագույն Հյուսիսում, պետք է վերացներ Ղազախստանի, Միջին Ասիայի, Անդրկովկասի ազգային շրջանների դարավոր հետամնացությունը։ Հայտնի է, թե ինչպիսի չտեսնված եռանդով, ինչպիսի հաջողությամբ սովետական ժողովուրդը փոխեց իր Հայրենիքի դեմքը, ագրարային, հետամնաց վիճակից այն դարձրեց առաջավոր, ինդուստրիալ երկիր։ Ստալինյան հնգամյակների ժամանակաշրջանում կատարվեցին այնպիսի վիթխա-



րի մասշտաբի աշխատանքներ, որոնց համար կապիտալիստական կարգերի օրով կպահանջվեին շատ տասնյակ տարիներ։

Այդ պատմական խնդիրը լուծելը հեշտ չէր։ Հարկավոր էր բազա ստեղծել երկրի սոցիալիստական վերափոխման համար, արագ ինդուստրիալիզացիայի համար։ Այդպիսի բազա դարձավ կենտրոնական արդյունաբերական շրջանը՝ Մոսկվայի գլխավորությամբ, որտեղ կենտրոնացվեցին որակյալ կադրերը, տեխնիկան և գիտական հիմնարկները։ Բայց կարո՞ղ էր արդյոք «չթի Մոսկվան» կատարել այդ կարևորագույն տնտեսական-քաղաքական խնդիրը։ Ո՛չ, չէր կարող, քանի դեռ այնտեղ կազմակերպված չէին արդյունաբերության նոր ճյուղեր և առաջին հերթին՝ զորեղ մեքենաշինությունը։

Ահա՛ թե ինչու պարտիան և կառավարությունը մեծ հոգատարություն ցուցաբերեցին մայրաքաղաքը ինդուստրիայի հզոր կենտրոն դարձնելու համար։ Դրանից էր մեծապես կախված մեր երկրի մյուս շրջանների ինդուստրիալիզացիայի հաջողությունը։ Եվ ահա, բոլշևիկների պարտիայի կամքով «չթի Մոսկվան» սկսեց արագորեն

դառնալ դազգահաշինության քաղաք, սարքեր արտադրող քաղաք։ 1940 թվականին Մոսկվայի մետաղամշակման գործարանների արտադրանքը 96 անգամ գերազանցում էր 1913 թվականի մակարդակից։

Աճեցին նոր խոշորագույն մեքենաշինական ձեռնարկություններ՝ Կույբիշևի անվան էլեկտրագործարանը, Կագանովիչի անվան գնդակավոր առանցքակալների գործարանը, «Կալիբր» գործարանը, որը պատրաստում է ճշգրիտ չափիչ սարքեր, մի շարք դազգահաշինական գործարաններ, որոնք մեր երկրում առաջին անգամ սկսեցին պատրաստել բարձր արտադրողականություն ունեցող դազգահներ, հեծանվային գործարանը։ Հին գործարաններից Միխելսոնի գործարանը (այժմ Վլադիմիր Իլյիչի անվան գործարան), Բրոմլեյ գործարանը (այժմ «Կրասնի պրոլետարի»), «Դինամո» գործարանը, «ԱՄՈ» գործարանը, (այժմ Ստալինի անվան ավտոմոբիլային գործարան) ենթարկվեցին այնպիսի վերակառուցման, որ աշխատանքի կազմակերպման ու արտադրության տնայնագործական մեթոդներով աշխատող նախկին փոքրիկ գործարանների տեղում փաստորեն ստեղծված են նոր, հզոր



ձեռնարկություններ։ Այդ բանում կարելի է համոզվել Ստալինի անվան գործարանի օրինակով։ Այդ գործարանի վերակառուցման վրա առաջին հնգամյակում ծախսվեց 87 միլիոն ռուբլի, երկրորդ հնգամյակում արդեն 474 միլիոն։ Գործարանը դարձավ ավտոմոբիլային արտադրության՝ Եվրոպայում խոշորագույն ձեռնարկություն։ Նրա արտադրանքը տասը տարվա ընթացքում աճեց, 12 միլիոն ռուբլուց հասնելով մինչև 930 միլիոն ռուբլու, այսինքն ավելի քան 77 անգամ։

Այսպես Մոսկվայում, չտեսնված կարճ ժամանակամիջոցում, ստեղծվեց մեքենաշինական զորեղ բազա, որը հնարավորություն տվեց արագորեն զարգացնելու երկրի անսպառ արտադրողական ուժերը։ Մոսկվայի գործարանների նշանը կրող ամեն տեսակ մեքենաների կարելի է հանդիպել Սովետական Միության ամենահեռավոր վայրերում, որտեղ կառուցվում են արդյունաբերական ձեռնարկություններ, մշակվում է հողի ընդերքը։

Մայրաքաղաքի դերը արմատապես փոխվեց։ Նախկինում Մոսկվան հումքի՝ բամբակի, նավթի, կաշվի սպառող էր միայն։ Այժմ նա դարձել է ծայրերկրների արտադրո-

ղական ուժերի զարգացման հիմք, այն տերիտորիաների, որոնք մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան տեխնիկապես հետամնաց էին, չունեին իրենց արդյունաբերությունը։ Օրինակ, բամբակագործական շրջաններում տեքստիլ արդյունաբերություն ստեղծելու համար Մոսկվայից այդ շրջաններն ուղարկվեցին ոչ միայն նոր մեքենաներ, այլև բանվորներ, ինժեներներ, տեխնիկներ, որոնք օգնեցին միջինասիական ռեսպուբլիկաներում դաստիարակել որակյալ բանվորների ու մասնագետների կադրեր։ Սոցիալիստական Մոսկվան եղբայրական օգնություն է ցույց տալիս մեծ Սովետական Միության կազմի մեջ մտնող ժողովուրդներին։ Այդ բանի մեջ փայլուն կերպով դրսևորվում է ստալինյան իմաստուն քաղաքականությունը, որն ուղղված է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների տնտեսական և կուլտուրական կյանքի ծաղկմանը։

Բացի մեքենաշինությունից, Մոսկվայում ուժեղ տեմպերով ծավալվում էին ծանր արդյունաբերության նաև մյուս ճյուղերը՝ քիմիական, մետաղամշակման և այլն։ Բայց այդ չի նշանակում, թե Մոսկվայում չէր զարգանում թեթև արդյունաբերությունը։



Ընդհակառակը, այդ ճյուղի գոյություն ունեցող ձեռնարկությունները վերակառուցվում էին և ավելացնում արտադրանքի քանակը։ «Պարիժսկայա Կոմունա» ֆաբրիկան, օրինակ, 1938 թվականին արտադրել էր մոտ 6 միլիոն զույգ կոշիկեղեն, մոտավորապես նույնքան, որքան արտադրում էին ցարական Ռուսաստանի բոլոր կոշկեղենի ֆաբրիկաները միասին։

Արմատական վերասարքավորման ենթարկվեց տեքստիլ արդյունաբերությունը։ Ստեղծվեց տեքստիլ մեքենաշինություն, հին գործվածքային դազգահները փոխարինվեցին ավտոմատ դազգահներով։ Տեքստիլ արդյունաբերության վերասարքավորումը, բազմահաստոցավորների շարժման ծավալումը, աշխատանքի ստախանովյան մեթոդները հնարավորություն տվին խիստ կերպով բարձրացնելու մայրաքաղաքի տեքստիլ ֆաբրիկաների արտադրողականությունը։ Երկու և կես հնգամյակի ընթացքում նրանք իրենց արտադրանքն ավելացրին 3,4 անգամ։

Մայրաքաղաքում ստեղծվում են արդյունաբերության նաև միանգամայն նոր ճյուղեր, տեխնիկայի վերջին խոսքով կառուց-

վում են խոշորագույն ձեռնարկությունները։
Դրանց թվին է պատկանում Միկոյանի ան-
վան մսի կոմբինատը։ Այդ կոմբինատն ու-
շագրավ է նրանով, որ այդտեղ ոչ մի բան
չի մնում անօգտագործելի — և՛ կաշին, և՛
մազը, և՛ ոսկորները, և՛ արյունը,— ամեն
ինչ օգտագործվում է պիտանի իրեր պատ-
րաստելու համար։

Մայրաքաղաքի պարծանքն են Ստալին-
յան հնգամյակների տարիներին կառուցված
հացի գործարանները։ Դրանք իրավամբ կոչ-
վում են ավտոմատներ։ Այստեղ բոլոր ար-
տադրական պրոցեսները, սկսած խմորը
հունցելուց և վերջացրած հացի փոխադրու-
մով, կատարվում է ավտոմատ եղանա-
կով, մարդու ձեռքը չի դիպչում ոչ մի բանի։
Մոսկվայում կա 14 այդպիսի ավտոմատ
հացի գործարան։ Դրանցից մի քանիսը
թխում են օրական մինչև 18 վագոն հաց։

Սովետական իշխանության տարիների ըն-
թացքում մայրաքաղաքում կառուցվել են
սննդարդյունաբերական շատ ձեռնարկու-
թյուններ, որոնք բավարարում են ոչ միայն
մոսկվացիների պահանջը։ Այդ գործարան-
ների ծխախոտեղենը և հրուշակեղենը ու-



ղարկվում է երկրի ամենահեռավոր ան-
կյունները։

Մոսկվայում կենտրոնացած է ամենահա-
րուստ պոլիգրաֆիական արդյունաբերու-
թյուն, հրատարակվում են հազարավոր ա-
նուն գրքեր, միլիոնավոր տիրաժներով լույս
են տեսնում զանազան թերթեր և ժուռնալ-
ներ։

Ոչ փոքր նշանակություն ունեն տեղական
արդյունաբերությունն ու արհեստագործա-
կան կոոպերացիան։ Վերջինս միավորում է
հարյուրավոր արտելներ, որոնք արտադրում
են հագուստ, ոտնաման, կահույք, մետաղ-
յա ամանեղեն, տնային գործածության
զանազան առարկաներ և բազմաթիվ այլ
իրեղեն քաղաքային տնտեսության ու բնակ-
չության համար։

Մայրաքաղաքի ձեռնարկությունների հըս-
կայական սիստեմը գործի դնելու և Մոսկ-
վայի կոմունալ կարիքները բավարարելու
համար պահանջվում էր ստեղծել չափազանց
հզոր էներգետիկ բազա։ Եվ այդ բազան
ստեղծվեց։ Դեռևս քաղաքացիական պատե-
րազմի ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինն
առաջադրեց վիթխարի մի խնդիր— էլեկտ-
րիֆիկացիայի ենթարկել մեր երկիրը։ Լե-

նինյան այդ իդեան մարմնավորվեց երկրի էլեկտրիֆիկացման առաջին պետական պլանի մեջ, որը կրճատ կոչվում է ԳՈԷԼՐՈ-յի պլան։ Հենց այն ժամանակ էլ սկսեց էլեկտրակայանների կառուցումը մայրաքաղաքի համար— կառուցվեցին Կաշիրայի էլեկտրակայանը, որն սկսեց աշխատել Մերձմոսկովյան ավազանի քարածուխով և Շատուրայի էլեկտրակայանը, որն աշխատում էր տորֆով։

Հետագայում ստեղծվեց Մոսկվայի էլեկտրոսիստեմը, որը ամենախոշորն է աշխարհում։ Այդ սիստեմի մեջ մտնում են մի շարք հզոր էլեկտրակայաններ և կենտրոնական ջերմաէլեկտրակայաններ։ Թե ինչ չափով է աճել մայրաքաղաքի էլեկտրական ցանցը, կարելի է դատել այսպիսի մի համեմատության միջոցով. միայն Ստալինոգորսկի պետական ռայոնական էլեկտրակայանի մեկ տուրբոգեներատորի պարունակած հզորությունը զգալիորեն գերազանցում է մինչռևոլյուցիոն Մոսկվայի բոլոր էլեկտրակայանների հզորությունից։

Մայրաքաղաքի էներգետիկայի համար մեծ նշանակություն ունի Մոսկվայի ածխային ավազանը, որը Ստալինյան հնգամյակ-



ների ժամանակաշրջանում վերածվեց վառելանյութի հզոր բազայի, դարձավ մայրաքաղաքի «հնոցը»։ Մինչև ռևոլյուցիան այստեղ քարածուխը գետնի տակից հանում էին տնայնագործական եղանակով, ձեռքի աշխատանքի գործադրությամբ։ Այժմ ածխահանքերը հագեցած են նորագույն մեխանիզմներով՝ տրանսպորտյորներով, էլեկտրաքարշակներով, հորատող մեքենաներով, հանքահատ մուրճերով, որոնք գործում են խտացրած օդի ուժով։ Քարածխի հանույթը մինչռևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է 35 անգամ։

Մոսկվայի արդյունաբերության զարգացման օրինակով պարզ երևում է, թե որքան մեծ է Սովետական կարգերի ստեղծագործ ուժը, թե ինչպիսի հսկայական առավելություններ է պարունակում սոցիալիստական պլանային տնտեսությունը։ Կապիտալիստական ոչ մի երկրում չեն եղել և չէին էլ կարող լինել, զարգացման այդպիսի տեմպեր, այդպիսի արագ ինդուստրիալ աճում։ Միայն մեզ մոտ, որտեղ ամեն ինչ կատարվում է ժողովրդի բարօրության համար, որտեղ կատարվել է աշխատանքի իսկական

ազատագրումը, հնարավոր են այդպիսի բարերար արդյունքներ։

Ֆաշիստական Գերմանիան ուխտադրժորեն հարձակվեց Սովետական Միության վրա, հույս ունենալով կարճ ժամանակում խորտակել սոցիալիզմի երկիրը, հպատակեցնել սովետական ժողովրդին, մեր բանվորներին և գյուղացիներին դարձնել գերմանական բարոնների ստրուկը։ Թշնամին ընդհուպ մոտեցավ Մոսկվային, մեր ծաղկուն քաղաքներն ու գյուղերը վերածելով «անապատի գոտու»։ Ընկեր Ստալինի զորավարական հանճարը և սովետական մարդկանց անխորտակելի հայրենասիրությունը մեր երկիրը փրկեցին ստրկացման սպառնալիքից։ Մեր ժողովուրդը մեծ հաղթանակ տարավ թշնամու դեմ։

Այդ համաշխարհային-պատմական հաղթանակի մեջ մեծ դեր խաղաց մայրաքաղաքի արդյունաբերությունը, որը պատերազմի տարիներին սկսեց ռազմաճակատին մատակարարել մարտական մեքենաներ, զենք, արկեր, ականներ, հանդերձանք, պարենամթերք։

1941 թվականի աշնանը, երբ թշնամին սպառնում էր Մոսկվային, խոշորագույն



ձեռնարկությունների այնտեղից էվակուացվեցին դեպի արևելք։ Շատ գործարաններ իրենց սարքավորմամբ ու կադրերով հիմնավեցին նոր վայրերում՝ Պովոլժյեում, Ուրալում, Սիբիրում, Միջին Ասիայում — և օգնեցին այնտեղ պաշտպանական ու մեքենաշինական արդյունաբերության արագ զարգացմանը։

1942 թվականին, այն բանից հետո, երբ Կարմիր Բանակը մեծ Ստալինի առաջնորդությամբ Մոսկվայի տակ ջախջախեց գերմանական զավթիչներին և նրանց հետ շպրտեց մայրաքաղաքի մոտից, սկսվեց Մոսկվայի արդյունաբերության վերականգնումը։ Կարճ ժամանակամիջոցում նորից ծավալվեց ինքնաթիռների, ավիացիոն մոտորների, ավտոմոբիլների, գնդակավոր առանցքակալների, մետաղահատ դազգահների, ամեն տեսակ զինամթերքի արտադրությունը։

Չնայած պատերազմի ժամանակվա ծանր պայմաններին, մայրաքաղաքի աշխատավորներն անձնվիրաբար աշխատում էին հանուն հաղթանակի։ Ֆաբրիկաներն ու գործարանները աշխատում էին օր ու գիշեր։ Մեր բանակը Մոսկվայի ձեռնարկություն-

ներից անընդհատ ստանում էր հսկայական քանակությամբ զենք, զինամթերք ու հանդերձանք։ Աշխատանքային սխրագործությունների համար այդ հերոսական տարիներին հազարավոր մոսկվացիներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով։

Հիտլերականները հսկայական վնաս հասցրին ինչպես մայրաքաղաքի, նույնպես և Մոսկվայի մարզի արդյունաբերությանը։ Նրանք ավերեցին ու հեղեղեցին Մերձմոսկովյան ավազանի բոլոր ածխահանքերը, շարքից հանեցին այնպիսի խոշորագույն ձեռնարկություններ, ինչպես Ստալինոգորսկի էլեկտրակայանը և Ստալինոգորսկի քիմիական կոմբինատը, Յախրոմայի, Վիսոկովոյի, Նարո-Ֆոմինսկի, Կրասնոպոլյանսկի և Վոլոկոլամսկի տեքստիլ ֆաբրիկաները, Կլինում գտնվող արհեստական թելի գործարանը, Մոժայսկի, Ռուզիի և Սոլնեչնոգորսկի շրջաններում գտնվող գործարանները։ Ամբողջապես կամ մասամբ ոչնչացվեցին տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի 327 ձեռնարկություն։

Բայց պատերազմը վերջանալուց դեռ շատ



առաջ սկսվեց թշնամու ավերած տնտեսության եռանդուն վերականգնումը։ Այդ վերականգնման գործում բացառիկ դեր էր պատկանում մայրաքաղաքի արդյունաբերությանը։ Մոսկվայի և Մոսկվայի մարզի աշխատավորների հերոսական ջանքերի շնորհիվ այդ դժվար աշխատանքը հաջողությամբ պսակվեց։ Զտեսնված կարճ ժամկետներում վերականգնվեցին Մերձմոսկովյան ածխային ավազանի ածխահանքերը։ Մայրաքաղաքի ձեռնարկությունները Մերձմոսկովյան ավազանի համար ուղարկում էին մարդիկ և սարքավորում, ամեն տեսակի նյութեր։

1942 թվականի հունվարի կեսերին արդյունահանվեցին քարածխի առաջին տոնանները, իսկ նույն տարվա սեպտեմբերին քարածխի օրական հանույթն արդեն գերազանցում էր մինչպատերազմյան մակարդակից։ Տապալվեցին հիտլերականների այն հաշիվները, թե ածխահանքերը երկար տարիներ չեն կարողանա աշխատել։ Այն ժամանակաշրջանում, երբ Դոնբասը ժամանակավորապես զավթված էր գերմանացիների կողմից, մոսկովյան «հնոցը» հատկապես կարևոր նշանակություն էր ստանում, վառելանյութ մատակարարելով ոչ միայն մայ-

րաքաղաքի, այլև մեր երկրի ամբողջ կենտրոնական շրջանի էլեկտրակայաններին և ձեռնարկություններին։ Պատերազմի վերջում ածխի հանույթը Մերձմոսկովյան ավազանում երկու և կես անգամ գերազանցեց մինչպատերազմյան մակարդակից։

Ստալինոգորսկի կենտրոնական ջերմաէլեկտրակայանը, որ ամենահզորն էր մեր երկրում և որը գերմանացիներն ավերել էին, ներկայումս ամբողջապես վերականգնված է։ Այս տարի նրա կարողությունը կգերազանցի մինչպատերազմյանից։ Վերականգնված են նաև Կաշիրայի ու Շատուրայի էլեկտրակայանները։

Մայրաքաղաքի ձեռնարկությունները նաև մեծ օգնություն ցույց տվին Մոսկվայի մարզի գյուղերում ավերված տնտեսությունը վերականգնելուն։ Մոսկվայի, ինչպես նաև Մոսկվայի մարզի մյուս քաղաքների բանվորները կոլխոզնիկների տների կառուցման վրա գործադրեցին 800 հազար աշխատանքային օր։ Ֆաբրիկաների և գործարանների կոլեկտիվները վերցնում էին գյուղերի ու կոլխոզների շեֆությունը։ Այսպես, օրինակ, մայրաքաղաքի Կիրովյան ռայոնի ձեռնարկությունների օգնությամբ Կոմունիստի-



չեսկի շրջանում վերականգնվեց 902 բնակելի տուն, 336 հասարակական շենք, ակումբ, դպրոց, հիվանդանոց։ Էլեկտրիֆիկացված են 54 կոլխոզ և երկու մեքենատրակտորային կայան։ Մոսկվայի Կալինինյան ռայոնի ձեռնարկությունները միայն այս տարվա ընթացքում Բոլշայա-Վյազմայի և Զվենիգորոդի մեքենատրակտորային կայանների համար ուղարկել են 186 կոմպլեկտ գործիքներ ու զանազան դազգահներ, ՄՏԿ-ներին մատակարարել են կոքս, ցեմենտ, մեխ։

Հետպատերազմյան առաջին հնգամյա պլանում սովետական մայրաքաղաքի արդյունաբերությանը մեծ տեղ է հատկացված։ Ճիշտ է, մեր երկրի շատ այլ շրջանների հզոր ինդուստրիալ զարգացման կապակցությամբ Մոսկվայի արդյունաբերության տեսակարար կշիռը ՍՍՌՄ արդյունաբերության ընդհանուր սիստեմի մեջ մի փոքր նվազել է, բայց մինչպատերազմյան մակարդակի համեմատությամբ նրա համախառն արտադրանքն աճում է մոտավորապես 30 տոկոսով։ Մայրաքաղաքի արդյունաբերությունն առաջվա նման բացառիկ մեծ ժողովրդատնտեսական նշանակություն կունենա ամ-

բողջ Սովետական Միության համար, հատկապես մեքենաշինության ասպարեզում։

Մոսկվայի մեքենաշինությունը նոր հընգամյակում կզարգանա գլխավորապես դազգահաշինության, էներգետիկ մեքենաշինության և ավտոմոբիլների արտադրության գծով։ Բացի Ստալինի անվան գործարանից, որը 1950 թվականին արտադրելու է 100 հազար բեռնատար ավտոմոբիլ և հարյուրավոր «ԶԻՍ — 110» մարդատար ավտոմոբիլներ, 40 հազար հատ «Մոսկվիչ» ավտոմեքենա կարտադրի փոքրալիտրաժ ավտոմոբիլների գործարանը։

Բնակչության կենսամակարդակը բարձրացնելու մասին Ստալինյան հոգատարությունն իր ցայտուն արտահայտությունն է գտել նոր հնգամյակի այն թվերի մեջ, որոնք վերաբերում են թեթև արդյունաբերությանը։ Բրդեղեն և բամբակեղեն գործվածքների արտադրությունը Մոսկվայում կաճի 1945 թվականի համեմատությամբ եռապատիկ չափով, իսկ մետաքսե գործվածքներինը ավելի քան չորս անգամ։ Արագորեն կզարգանա լայն սպառման ապրանքների արտադրությունը։ Այն արտադրանքի ընդհանուր արժեքը, որ 1950 թվականին կտան Մոսկ-



վայի թեթև ու տեղական արդյունաբերության, արհեստագործական կոոպերացիայի ու հաշմանդամների կոոպերացիայի ձեռնարկությունները, կկազմի ավելի քան հինգ միլիարդ ռուբլի։

1946—1950 թվականների ընթացքում հետագա վերակառուցման կենթարկվի Մոսկվայի երկաթուղային հանգույցը և կավելանա նրա բեռնաշրջանառությունը։ Նախատեսվում է արագ տեմպով վերականգնել գոյություն ունեցող էլեկտրակայանները և կառուցել նորերը։ Հնգամյակի վերջում Մոսկվայի էներգետիկ սիստեմի կարողությունը 1940 թվականի համեմատությամբ կկրկնապատկվի։

Հատկապես կարևոր խնդիր է հանդիսանում մայրաքաղաքի հետագա ջերմաֆիկացիան և գազիֆիկացիան։ 1946—1950 թվականներին գազիֆիկացիայի կենթարկվի մոսկվացիների 200 հազար բնակարան, գազը լայնորեն կօգտագործվի տների ջեռուցման սիստեմների համար։ Նախատեսված է գազային կայանի կառուցումը Մերձմոսկովյան ավազանում։ Այնտեղից գազը խողովակներով կուղարկվի մայրաքաղաք։ Բացի դրանից, Մոսկվայի մոտ կկառուցվի

կոքսագազային գործարան: Դրա շնորհիվ գազի գործածությունը Մոսկվայում հնգամյակի ընթացքում կաճի 10 անգամ:

Հնգամյա պլանով նախատեսված աշխատանքները վիթխարի են: Դրանք պահանջում են բանվորների, ծառայողների, ինժեներա-տեխնիկական աշխատողների լարված ջանքեր, ստեղծագործական եռանդ: Բայց արդեն այժմ կարելի է վստահորեն ասել, որ ստալինյան կանխատեսումները հաջողությամբ կկատարվեն: Այդ մասին ամենից ավելի լավ վկայում են առաջին մեկ և կես տարվա արդյունքները, այն անձնազոհ աշխատանքային հերոսությունը, որ հանդես են բերում սովետական մարդիկ, նրանց անհողդողդ կամքը՝ մեծ աշխատանքների պլանն իրագործելու ոչ թե հինգ, այլ չորս տարում:

Ինչպես հայտնի է, Մոսկվայի և Մոսկվայի մարզի արդյունաբերությունը հաջողությամբ կատարեց նոր հնգամյակի առաջին տարվա պլանը: Մոսկվացիները չտեսնված խանդավառությամբ մտել են Մեծ Հոկտեմբերի 30-րդ տարեդարձի պատվին ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցու-



ցության մեջ և հաստատակամորեն իրագործում են իրենց պարտավորությունը — նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանն ավարտել ժամկետից շուտ, մեծ տոնին:

1947 թվականի առաջին կիսամյակի պլանը Մոսկվայի արդյունաբերությունը կատարել է 109 տոկոսով: Հարյուրավոր ձեռնարկություններ հաջողությամբ ավարտել են յոթնամսյա ծրագրի կատարումը: Առաջին շարքերում են ընթանում Օրջոնիկիձեի անվան հաստոցաշինական գործարանի, գնդակավոր առանցքակալների գործարանի, «Կալիբր», «Կաուչուկ», «Մաշինոստրոիտել» գործարանների, Վորոշիլովի անվան գործարանի, «Կրասնայա Ռոզա» մետաքսեղենի կոմբինատի, «Զարյա սվոբոդի» կոշկեղենի ֆաբրիկայի և շատ այլ ձեռնարկությունների կոլեկտիվները:

Առաջին կիսամյակում Մոսկվայի արդյունաբերությունը պլանից ավելի երկրին տվեց հարյուրավոր ավտոմոբիլներ, դազգահներ, հարյուր հազարավոր գնդակավոր առանցքակալներ, մեծ կարողություն ունեցող էլեկտրական մոտորներ, միլիոնավոր ռուբլիների պահեստի մասեր գյուղատնտեսական մեքենաների համար, շինարարական

մեխանիզմներ, մեկ միլիոն մետրից ավելի գործվածքեղեն, հարյուր հազարավոր զույգ կոշիկ, հսկայական քանակությամբ լայն սպառման ապրանքներ։ Դա լավագույն ապացույցն է այն բանի, որ մեծ Ստալինին տված իրենց խոստումը մոսկվացիները բոլշևիկորեն կկատարեն։

Հետպատերազմյան հնգամյակի պլանն ամենաարագ կերպով կատարելու համար մղվող պայքարում աչքի են ընկնում հարյուրավոր ու հազարավոր ստախանովականներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Դրանցից շատերի համբավը տարածված է մայրաքաղաքում, ամբողջ երկրում։ Ներկայումս ո՞ւմ հայտնի չէ, օրինակ, «Պարիժսկայա Կոմունա» ֆաբրիկայի ձևող վարպետ Վասիլի Մատրոսովի անունը, նրա, որը դարձավ աշխատանքի ստախանովյան մեթոդներն արմատավորելու համար ծավալված շարժման նախաձեռնողը։

Գնդակավոր առանցքակալների առաջին գործարանի բազմահաստոցավոր Աննա Կուվշինովան, «Սերպ ի մոլոտ» գործարանի պողպատ ձուլող ընկեր Յերոշկինը, Ստալինի անվան ավտոմոբիլային գործարանի դարբին ընկեր Օղերեցկովը, «Կրասնի պրոլե-



տարիյ գործարանի խառատ ընկ. Երմոխինը, Նոգինի անվան տրիկոտաժի ֆաբրիկայի գործող բանվորուհի ընկ. Ինգիլտիևան, Բուդյոննու անվան գործարանի տեխնոլոգ ընկ. Սալինը և մայրաքաղաքի հազարավոր այլ ստախանովականներ ցույց են տալիս աշխատանքային արիության օրինակներ, առաջ են մղում արտադրությունը, դառնում են մասսաների նոր առաջատարներ հետպատերազմյան հնգամյակի համար մղվող պայքարում։

Կառավարության որոշումը՝ Մոսկվայի հիմնադրման 800-ամյակը տոնելու մասին, աշխատանքային խանդավառության նոր ալիք առաջացրեց մայրաքաղաքի աշխատավորների մեջ։ Շատ ձեռնարկություններից տեղեկություններ են ստացվում, որ կոլեկտիվները ի պատիվ այդ տոնակատարության, ստանձնում են լրացուցիչ պարտավորություններ և դրանք հաջողությամբ կատարում են։

Մոսկվայի աշխատավորները սիրում են իրենց քաղաքը։ Նրանք հպարտանում են այն բանով, որ ապրում և աշխատում են սովետական մայրաքաղաքում, այն մեծ քաղաքում, որտեղ ապրում և աշխատում է

սովետական ժողովրդի իմաստուն ու սիրելի առաջնորդ ընկեր Ստալինը։ Մոսկվացիներն իրենց բոլոր ուժերը, ընդունակությունները, գիտելիքները, իրենց ողջ բոցաշունչ հայրենասիրությունը կգործադրեն, որպեսզի ավելի արագորեն հասնեն մայրաքաղաքի արդյունաբերության հետագա վերելքին՝ ի բարօրություն սոցիալիստական Հայրենիքի։

Պրոֆեսոր Վ. Ի. ԼԱՎՐՈՎ



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐԻ ՍԻՐՏԸ

Մոսկվան Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մայրաքաղաքն է, մեր մեծ Հայրենիքի խոշորագույն քաղաքական, կուլտուրական և ինդուստրիալ կենտրոնը։

Մոսկվան հաղթական Սոցիալիստական ռևոլյուցիայի սիմվոլն է, մարքս-լենինյան ուսմունքի դարբնոցը։

Մոսկվայում է ապրել և աշխատել մարդկության հանճար, համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ, Կոմունիստական պարտիայի և աշխարհում առաջին Սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինը։

Մոսկվայում են մշակվում մեր ժողովրդին երջանկություն բերող օրենքները։ Այստեղ մշակվեց և ընդունվեց մեծ Ստալինյան Կոնստիտուցիան—աշխարհում առաջինը հանդիսացող սոցիալիզմի Կոնստիտուցիան։

Մոսկվայում են ստեղծվում այն համարձակ պլանները, որոնք վերակառուցեցին երբեմնի հետամնաց երկրի ողջ էկոնոմիկան և մեր երկիրը հասցնում են աննախընթաց բարձրության։

Միլիոնավոր մարդիկ երկրագնդի բոլոր ծայրերից դեպի Սովետական երկրի սիրտը՝ Մոսկվա են ուղղում հիացմունքով լի իրենց հայացքները։

Մոսկվան աշխարհում ամենահին և միաժամանակ ամենաերիտասարդ մայրաքաղաքներից մեկն է։

Այստեղ, այս մեծ քաղաքում են գտնվում Սովետական կառավարությունը և Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն։

Մոսկվայում է ապրում և աշխատում բոլշևիկյան պարտիայի առաջնորդ և Սովետական կառավարության ղեկավար մեծ Ստալինը։

Մոսկվայի վրա պայծառ շողշողում են Կրեմլյան հնգաթև սուտակե աստղերը, որոնք ամրացված են հնադարյան Կրեմլի հինգ ամենաբարձր աշտարակների վրա։ Այդ աստղերից յուրաքանչյուրի թևերի բարձրությունը երեք մետր է, քաշն է համարյա մեկ



տոննա։ Աստղերն ամրացված են գնդակավոր առանցքակալների վրա և շրջվում են քամու ուղղությամբ։ Ցերեկը աստղերն առկայծում են ոսկու փայլով, իսկ մթության մեջ՝ վառվում սուտակի լույսով։ Կրեմլյան աստղերի լույսը երևում է շատ հեռվից։

Կրեմլի բլրի բարձրունքին խոյանում է Կրեմլյան պալատը։ Այդ վիթխարի պալատի կատարին ամրացված 12 մետրանոց մետաղաձողի վրա ծածանվում է մեր դրոշը—Սովետների երկրի վեհության և փառքի սիմվոլը։

Այդ պալատում է նիստեր ունենում Սովետական պետության բարձրագույն օրգանը՝ ՍՍՌ Միության Գերագույն Սովետը։ Այդտեղ են հավաքվում Սովետական երկրի ժողովրդական դեպուտատները պետական մեծ հարցերի լուծման համար, այդտեղ նրանք հանդիպում են պարտիայի և կառավարության ղեկավարների հետ։

Այդ պալատի դահլիճներից մեկում են տեղի ունենում բոլշևիկյան պարտիայի համագումարները։ Այստեղ զեկուցումներով ու ճառերով հանդես է գալիս համաշխարհային պրոլետարիատի սիրելի առաջնորդ մեծ Ստալինը։

⁂

Կրեմլյան պարսպի մոտ, եղբայրական գերեզմանում թաղված են Սովետական իշխանության համար մղված պայքարում զոհված լավագույն մարդիկ։

Կրեմլի հնադարյան պարսպի մեջ են ամփոփված բոլշևիկյան պարտիայի ու Սովետական պետության ականավոր գործիչների՝ Կիրովի, Գորկու, Կույբիշևի, Օրջոնիկիձեի, Կրասինի, Մենժինսկու, Կլարա Ցետկինի, Կրուպսկայայի աճյունասափորները։

Կրեմլի հնավուրց պարսպի մոտ, Վ. Ի. Լենինի դամբարանի հետևը, Կառավարության որոշմամբ կառուցված են հուշարձաններ Կալինինի, Ձերժինսկու, Սվերդլովի և Ֆրունզեի գերեզմանների վրա։

Կրեմլի առջև, Կարմիր հրապարակում, հղկված կարմրավուն ու սև մարմարից կառուցված է Լենինի դամբարանը։

1924 թվականի հունվարի 27-ին սովետական ժողովուրդը Կարմիր հրապարակում թաղեց Վլադիմիր Իլյիչ Լենինին։ Ժամը 16-ին թաղման քայլերգի հնչյունների, գործարանային շչակների սուլոցների և հրանոթային համազարկերի որոտի տակ սիրելի առաջ-



նորդ և ուսուցիչ Լենինի մարմինը դրվեց դամբարանում։

Լենինի մահից հետո գումարված ՍՍՌՄ Սովետների երկրորդ համագումարում ընկեր Ստալինը պարտիայի անունից մեծ երդում տվեց պատվով կատարել Վլադիմիր Իլյիչ Լենինի պատգամները։ Այդ երդումն ընկեր Ստալինը և բոլշևիկների պարտիան կատարել ու կատարում են։ Լենինի մահից հետո բոլշևիկների պարտիան և սովետական ժողովուրդը համախմբվեցին ընկեր Ստալինի շուրջը, որը Լենինի գործի ամենահավատարիմ և կայուն շարունակողն է։

Ամեն օր մեր ընդարձակ Հայրենիքի բոլոր ծայրերից՝ հեռավոր Սիբիրից, Ուզբեկստանից, Ուկրաինայից և Բելոռուսիայից, Հայաստանից, Վրաստանից ու Ադրբեջանից, ինչպես նաև երկրագնդի բոլոր երկրներից այստեղ, Լենինի դամբարանն են գալիս աշխատավորների բազմաթիվ դելեգացիաներ, հարյուր-հազարավոր մարդիկ, որպեսզի տեսնեն մարդկության հանճար Վլադիմիր Իլյիչ Լենինին։

Դամբարանի գլխավոր ֆասադն ունի երկու տրիբուն, որտեղից տոնական օրերին հանդես են գալիս պարտիայի և կառավա-

ության ղեկավարները։ Այդ օրերին Կարմիր մայրաքաղաքի աշխատավորները Դամբարանի տրիբունի վրա, պարտիայի և կառավարության ղեկավարների մեջ, տեսնում են սիրելի առաջնորդ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին։

Հայրենական Մեծ պատերազմի ամենածանր պահին, երբ գերմանական հրոսակախմբերը մոտենում էին Մոսկվային—Սովետական երկրի սրտին, Դամբարանի տրիբունից հնչեց մեծ Ստալինի վստահ ձայնը։ Ստալինը հայտարարեց, որ մենք կարո՛ղ ենք ջախջախել և անպայման կջախջախե՛նք գերմանացիներին։

Լենինի դամբարանի մոտով, երդումը սրտներում, Ստալինի անունը շուրթերին, անցնում էին Սովետների երկրի ռազմիկները, նրանք գնում էին պաշտպանելու իրենց սիրելի Հայրենիքը։

Տոնական օրերին Կարմիր հրապարակը լցվում է միլիոնավոր աշխատավորներով։ Սովետական բանակի ռազմիկների կուռ շարքերը և ցուցարարների շարասյուները անցնում են Դամբարանի մոտով, ցուցադրելով Սովետական պետության հզորությունը,



իրենց անսահման նվիրվածությունը մեծ Ստալինին։

Կարմիր հրապարակն ունի իր փառապանծ մարտական պատմությունը։ Այստեղ 1917 թվականի հոկտեմբերյան անմոռանալի օրերին տեղի ունեցան մարտական ընդհարումներ։ Ռազմառևոլյուցիոն Կոմիտեի կոչով կարմիրգվարդիական ջոկատները, ռևոլյուցիոն զինվորների հետ միասին, ճեղքեցին յունկերների շղթան և Կարմիր հրապարակի վրայով թափանցեցին Կրեմլ։ Կրեմլը գրավվեց և մաքրվեց սպիտակներից։

Ֆրանսիական հռչակավոր գրող Հանրի Բարբյուսն իր հիանալի «Ստալին» գրքում գրել է, թե Կարմիր հրապարակը «երկրագնդի բոլոր լավագույն մարդկանց հայրենիքն է... և, թվում է, թե նա, ով հրապարակի գիշերային անդորրի մեջ պառկած է Դամբարանում, ներկայումս աշխարհում միակն է, մնացել, որ քնած չէ։ Նա արթուն հսկում է իր շուրջը սփռված ամեն ինչին,— քաղաքներին, գյուղերին... Ով էլ որ լինեք դուք, այդ բարեկամի կարիքն զգում եք։ Եվ ով էլ որ դուք լինեք, ձեր բախտի մեջ լավագույնը գտնվում է այն մյուս մարդու ձեռքում, որը նույնպես արթուն է բոլորի փոխարեն և աշխատում է,—

գիտնականի գլխով, բանվորի դեմքով, հասարակ զինվորի հագուստով մարդու։ Դա մեծ Ստալինն է։

Կարմիր հրապարակից ոչ հեռու գտնվում է Լենինի թանգարանը։ 1935 թվականին ընկեր Ստալինի նախաձեռնությամբ ստեղծված այդ հիանալի թանգարանի բազմաթիվ դահլիճներում հոգատար ու խնամքով հավաքված է ամեն բան, ինչ անմիջական առնչություն ունի Լենինի կյանքի ու ռևոլյուցիոն գործունեության հետ։ Թանգարանում կա ավելի քան 5.000 թանկարժեք էքսպոնատ, դրանց թվում ձեռագրեր՝ Լենինի հանճարեղ մտքերի բնագիր փաստաթղթերը, բազմաթիվ հրատարակություններ, որոնց մեջ տպագրվել են Լենինի երկերը, Լենինի կողմից ստորագրված փաստաթղթեր ու դեկրետներ։

Լենինյան հարուստ ժառանգությունը ցուցադրված է ժամանակագրական հաջորդականությամբ, Լենինի կյանքի և գործունեության ժամանակաշրջաններին համապատասխան դասավորված բազմաթիվ հսկայական դահլիճներում։ Քայլ առ քայլ, էտապ էտապի ետևից այցելուները տեսնում են ժողովուրդների հանճարեղ առաջնորդ և ուսու-



ցիչ Վ. Ի. Լենինի կյանքի ամբողջ ուղին, և Լենինի մեծ զինակից ընկեր Ստալինի կյանքն ու պայքարը, որ անխզելիորեն միաձուլված է այդ ուղու հետ։

***

Մոսկվան ինդուստրիալ հսկաների քաղաք է։ Սովետական Միության բոլոր ծայրերի հետ նա կապված է երկաթուղիներով։ Գնացքներն ամեն օր երկրի բոլոր կողմերից հումք են բերում Մոսկվայի գործարանների ու ֆաբրիկաների համար, իսկ այստեղից բոլոր կողմերն են տանում Մոսկվայում արտադրված ավտոմոբիլները, դազգահները, էլեկտրասարքավորումը, ճշգրիտ մեխանիկայի առարկաները, զանազան գործվածքներ, տպագիր հրատարակություններ։

Մոսկվան մեր երկրի կուլտուրայի և գիտության կենտրոնն է։ Մոսկվայում է գտնվում Մարքսի-Էնգելսի-Լենինի ինստիտուտը, այստեղ է աշխատում ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիան — Միության մեջ խոշորագույն գիտական հաստատությունը։ Մոսկվայում կան բազմաթիվ բարձրագույն ուսումնական հաստատություններ, որոնք նոր, սովետական գիտության տարածողներն են։

ՍՍՌ Միության բոլոր ծայրերից մարդիկ գալիս են Մոսկվա սովորելու և այդտեղից՝ Մոսկվայից Սովետական Միության բոլոր ծայրերն են ուղարկվում բժիշկներ, ինժեներներ, մանկավարժներ, գիտական աշխատողներ։

Մոսկվան մեր երկրի արվեստի կենտրոնն է։ Մոսկվայում են գտնվում աշխարհահռչակ թատրոնները՝ Օպերայի և Բալետի Ակադեմիական Մեծ թատրոնը, Գորկու անվան Ակադեմիական Գեղարվեստական թատրոնը, Փոքր թատրոնը, Վախտանգովի անվան, Ստանիսլավսկու անվան, Նեմիրովիչ— Դանչենկոյի անվան և այլ թատրոններ։

Սովետական Միության սահմաններից շատ հեռու, իրենց ամենաուշագրավ և թանկարժեք էքսպոնատներով ու գրքերով հայտնի են Մոսկվայի թանգարաններն ու գրադարանները։ Հռչակավոր Տրետյակովյան պատկերասրահում հավաքված են ականավոր գեղանկարիչների գլխավոր ստեղծագործությունները, նշանավոր են Պատմական թանգարանը, Կերպարվեստի թանգարանը, Գրական թանգարանը, Տոլստոյի թանգարանը և այլն։

Քաղաքի կենտրոնում է գտնվում Վ. Ի.



Լենինի անվան Համամիութենական գրադարանի բազմահարկ մեծ շենքը։ Այստեղ հավաքված են գրքերի և բրոշյուրների ամենահազվագյուտ հրատարակությունները։ Գրադարանի ընթերցասրահներում ամեն օր կարելի է տեսնել անհամար թվով գիտնականների, ուսանողների, որոնք հարստացնում են իրենց գիտելիքները։

Մոսկվան՝ դպրոցների, բուհերի, գիտահետազոտական ինստիտուտների, թատրոնների, ակումբների, թանգարանների, գրադարանների և այլ կուլտուր-լուսավորական հիմնարկների իր հսկայական ցանցով, որոնք իսպաս են դրված աշխատավոր մասսաներին, հանդիսանում է սովետական բարձր կուլտուրայի ստեղծման օջախ, ցույց տալով նրա գերազանցությունը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո ծավալված լայն վերակառուցումը Մոսկվան դարձրեց հոյաշեն մայրաքաղաք։ Մոսկվա գետի գրանիտապատ գեղեցիկ ափերը, լայն և ուղիղ ասֆալտած փողոցները, ընդարձակ հրապարակները, բազմահարկ հոյակապ շենքերը, նորակառույց տների թաղամասերը,— այս

թաղերը հին Մոսկվան դարձրել են միանգամայն նոր տիպի քաղաք։

Մոսկվան գրավում է մի քանի հազար հեկտար տարածություն։ Նույնիսկ գետնի տակն էլ կան մարմարաշեն պալատներ— դրանք աշխարհում լավագույնը հանդիսացող Մոսկվայի Մետրոպոլիտենի կայարաններն են։

Ստալինյան նոր հնգամյակում Մոսկվան կստանա երեք միլիոն քառակուսի մետր լրացուցիչ բնակելի տարածություն։

Լայն պողոտաների քաղաք, հոյակապ պալատների, կանաչազարդ պարկերի ու պուրակների, ստադիոնների քաղաք,— այսպիսին է այսօր փառապանծ մայրաքաղաք Մոսկվան, որով պարծենում և որին ջերմորեն սիրում են մեր մեծ Հայրենիքի աշխատավորները։

ԱԼ. ԽՈՍՐՈՎՅԱՆ
ԱՐ. ՔՈԹԱՆՋՅԱՆ

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը հիմնական պայմանն է մեր երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման ու ամրապնդման գործում։ «Աշխատանքի արտադրողականությունը,— գրել է Լենինը,— վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակակարգի հաղթանակի համար»։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեր երկրի էկոնոմիկայի վերելքի ընդհանուր պլանի մեջ առաջնակարգ տեղ է գրավում։

Սովետական հասարակակարգի ստեղծման առաջին օրերին Մոսկվայի բանվորների նախաձեռնությամբ կազմակերպված կոմունիստական շաբաթօրյակները սոցիալիստական շինարարության հետագա զարգացման ընթացքում վերածվեցին սոցիալիստական աշխատանքի նոր ձևերի, ինչպես

համաժողովրդական սոցիալիստական մրցումը, հարվածայնությունը, ստախանովյան շարժումը։

Լենինի գործի հավատարիմ շարունակող ընկեր Ստալինը սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում միշտ մեծ նշանակություն է տվել, և տալիս է, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, նշելով դրա կարևորագույն դերը որպես հասարակական հարստության աճման, սոցիալիստական տնտեսության զարգացման, սովետական ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման հիմնական պայման։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ առանց աշխատանքի արտադրողականության անընդհատ աճման, մենք չենք կարող վճռել մեր առջև կանգնած խոշորագույն տնտեսական խնդիրները և պահպանել մեր անկախությունը։ Աշխատանքի արտադրողականության աճումը պահանջում է բարձրացնել արտադրական կարգապահությունը, լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունն ու հարվածայնությունը, հմտորեն օգտագործել նոր տեխնիկան, ռացիոնալ ձևով կազմակերպել աշխատանքը։



Ընկեր Ստալինի այդ իմաստուն ցուցումներն ապահովեցին մեր երկրում աշխատանքի արտադրողականության աննախընթաց վերելքը։ Ստալինյան հնգամյակների հաղթական իրականացումը նշանավորվեց աշխատանքի արտադրողականության հսկայական աճումով ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

Առաջին հնգամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականությունը ՍՍՌՄ-ում աճեց 41 տոկոսով, երկրորդ հնգամյակում՝ 82 տոկոսով, երրորդ հնգամյակի երեք տարվա ընթացքում՝ 30 տոկոսով։ 1913 թվականի համեմատությամբ 1937 թվականին մեկ բանվորի արտադրողականությունն մեր երկրում աճեց 3,3 անգամ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերով ՍՍՌՄ-ն անցավ բոլոր կապիտալիստական երկրներից։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին սովետական ժողովրդի բարձր հայրենասիրությունն ապահովեց աշխատանքի արտադրողականության հետագա վերելքը։ 1942 թվականից մինչև 1945 թվականն ընկած ժամանակամիջոցում, չնայած պա-

տերազմական պայմաններին, աշխատանքի արտադրողականությունը մեր երկրում աճեց 40 տոկոսով։

ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը, այն է՝ հասնել և առաջ անցնել կապիտալիստական գլխավոր երկրներից տնտեսական տեսակետից, այսինքն բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի չափի իմաստով, պահանջում է աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացում։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946-1950 թ. թ. հնգամյա պլանը նախատեսնում է աշխատանքի արտադրողականության հետագա աճ։ Ըստ հնգամյա պլանի, աշխատանքի արտադրողականությունը 1950 թվականին պետք է 1940 թվականի համեմատությամբ բարձրացվի արդյունաբերության մեջ 36 տոկոսով և շինարարության մեջ 40 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականության աճմանը զուգընթաց, հնգամյա պլանով նախատեսվում է աշխատավարձի զգալի բարձրացում։ Բանվորների և ծառայողների տարեկան միջին աշխատավարձը 1950



թվականին կբարձրանա մինչև 6 հազար ռուբլու, որը զգալիորեն գերազանցում է 1940 թվականի մակարդակը։

Հնգամյա պլանով նախատեսված աշխատանքի արտադրողականության աճը միանգամայն ռեալ է։ Այդ է վկայում հետպատերազմյան հնգամյակի առաջին տարվա և երկրորդ տարվա առաջին կիսամյակի պլանների կատարումը։ Հարյուրհազարավոր ձեռնարկություններ, արդյունաբերության ամբողջ ճյուղեր, սոցիալիստական մրցության լայն ծավալման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ժամկետից շուտ կատարեցին և գերակատարեցին 1947 թվականի առաջին կիսամյակի արտադրական պլանները։ Սովետական Հայաստանում արդյունաբերության համախառն արտադրանքի պլանն այս տարվա երկրորդ եռամսյակում կատարվեց 114 տոկոսով։ Արդյունաբերության բոլոր ճյուղերում աճել են նոր կադրեր, արտադրության նովատորներ, որոնք հասնում են աշխատանքի բարձր արտադրողականության։

Երևանի № 3-րդ կոշիկի գործարանի՝ ընկ. Թումանյանի ձևող բրիգադան, նա-

խահոկտեմբերյան սոցիալիստական մըրցության մեջ մտնելով Մոսկվայի «Պարիժըսկայա կոմունա» ֆաբրիկայի անվանի ձևող Վ. Մատրոսովի հետ, հասել է արտադրական բարձր ցուցանիշների։ Աշխատանքային տեղը ճիշտ կազմակերպելու և բանվորական օրը լրիվ օգտագործելու շնորհիվ բրիգադայի բոլոր անդամներն իրենց արտադրական պլանները կատարում են 200—250 տոկոսով։ Բրիգադան 1947 թվականի իր տարեկան պլանը կատարեց մայիսի 1-ին և այժմ արտադրանք է տալիս հաջորդ տարվա հաշվին։

Կաշվի-գալանտերեայի ֆաբրիկայի առաջավորները, կիրառելով Մատրոսովի մեթոդը, զգալի հաջողությունների են հասել։ Կարող բանվորուհի Էմմա Գրիգորյանը, որն արտադրական նորման սիստեմատիկաբար կատարում է 300 տոկոսով և մայիսի 1-ին ավարտեց իր տարեկան նորման, այժմ արդեն կատարել է երկու տարվա նորմա։ Նույն գործարանի բանվորներ՝ Հայկ Մուրադյանը և հայրենադարձ Գևորգ Աֆրիկյանը իրենց նորման կատարում են 300—370 տոկոսով։



Երևանի Ավտոդողերի գործարանի Է. Գիշյանի կալանդրովշչիկների բրիգադան, որը բաղկացած էր 11 հոգուց, վերակառուցելով իր աշխատանքը և բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, կարողացավ բրիգադայի կազմը կրճատել 37 տոկոսով։ Այժմ 11 մարդու փոխարեն բրիգադայում աշխատում են 7 հոգի և, չնայած դրան, հունվար ամսից սկսած բրիգադան իր արտադրական պլանները կատարում է 140—150 տոկոսով։ «Կալիբր» գործարանի վարպետ Նիկոլայ Ռոսինելի աշխատանքի փորձը կենդանի արձագանք գտավ Գիշյանի բրիգադայում։ Նա առաջինն առաջարկեց այդ մեթոդը կիրառել իրենց ցեխում, և դրա հիման վրա պարտավորվել է մինչև սեպտեմբերի 10-ը ավարտել բրիգադայի տարեկան արտադրական պլանը։

Այս և դրա նման շատ ու շատ առաջավորների օրինակը ցույց է տալիս, թե աշխատանքի արտադրողականության բարձրացման, հասարակական բարիքի աճման ինչպիսի՜ անսպառ հնարավորություններ են թաքնված սովետական հասարակակարգի ընդերքում, մեր մարդկանց մեջ։

Ճիշտ պլանավորել արտադրությունը, այդ

նախ և առաջ նշանակում է հաշվի առնել մեր մարդկանց նախաձեռնությունն ու ըստեղծագործությունը։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կան հարյուր հազարավոր առաջավոր ստախանովականներ, որոնք հասել են աշխատանքի բարձր արտադրողականության և դա շնորհիվ այն բանի, որ նրանք անընդհատ բարձրացնում են իրենց տեխնիկական գիտելիքները, լրիվ և ճիշտ են օգտագործում նոր տեխնիկան, կատարելագործում են արտադրության պրոցեսները, արդյունավետ կերպով են օգտագործում բանվորական օրվա յուրաքանչյուր րոպեն։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում պետք է կողմնորոշվել հենց այդ առաջավորների ցուցանիշներով, արտադրական աշխատողների ամբողջ մասսան հասցնելով առաջավորների մակարդակին։ Այս է մասսայական շարժման էությունը։

Պլանների կատարման համար ծավալված պայքարը պահանջում է ճիշտ կազմակերպել արտադրությունը, հետ մնացող ձեռնարկությունները մղել առաջ, աշխատել համաչափ, ըստ գրաֆիկի, առանց գրոհայ-



նության, հասնել աշխատանքի արտադրողականության անշեղ աճման, պլանների կատարմանը յուրաքանչյուր ձեռնարկությունում, յուրաքանչյուր բանվորի կողմից։ Չի կարելի թույլ տալ, որ արդյունաբերության առանձին ճյուղերի պլանները կատարվեն ի հաշիվ առաջավոր ձեռնարկությունների պլանների կատարման, իսկ առանձին ձեռնարկությունների պլանները՝ ի հաշիվ ստախանովականների պլանների գերակատարման։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական պայմաններից մեկն է արտադրության տեխնոլոգիայի կազմակերպման բարելավումը, որի համար վճռական նշանակություն ունի արտադրական ցիկլի կրճատումն ի հաշիվ տեխնոլոգիայի փոփոխման և բարելավման։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման էական նախապայմանն է նաև արտադրական պրոցեսների մեքենայացումը արդյունաբերության բոլոր ճյուղերում։ Գործի դնել ձեռնարկության ունեցած ամբողջ սարքավորումը, յուրաքանչյուր դազգահ և սարք օգտագործել ըստ իր նշանակման, լրիվ կարողությամբ,— այս է

խնդիրը։ Որքան ավելի է ձեռնարկությունը հագեցված մեխանիզմներով, այնքան ավելի բարձր կլինի արտադրության մակարդակը, այնքան ավելի արտադրանք կստացվի։

Արտադրության կազմակերպումը բարելավելու գործում առաջատար դեր պետք է խաղան ձեռնարկությունների ինժեներա-տեխնիկական աշխատողները, որոնց պարտականությունն է իրագործել աշխատատար պրոցեսների մեխանիզացիան, մշակել և կիրառել նոր, ավելի կատարելագործված տեխնոլոգիա, օգնել ռացիոնալիզատորական առաջարկների մշակմանն ու կիրառմանը։

Աշխատանքի վարձատրության ճիշտ կազմակերպումը աշխատանքի արտադրողականության բարձրացման հզոր ազդակն է։ Այդ տեսակետից մեծ նշանակություն ունի աշխատանքի վարձատրման պրոգրեսիվ-գործավարձային սիստեմը։ Գործավարձը հիմնված է նախ և առաջ աշխատանքի ճիշտ նորմավորման և տեխնիկական նորմաների ճիշտ մշակման վրա։ Տեխնիկական նորմաները, սովորեցնում է ընկեր Ստալինը, կարգավորող մեծ ուժ են արտադրության մեջ, որոնք կազմակերպում են բան-



վորների լայն մասսաներին բանվոր դասակարգի առաջավորների շուրջը։

Ճիշտ կազմակերպված, գիտականորեն հիմնավորված արտադրական նորմաները մեծ դեր են խաղում աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Ուստի պետք է համարձակորեն կիրառել այնպիսի տեխնիկական նորմաներ, որոնք նկատի ունեն արտադրության առաջավորների փորձը։

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության հետագա ծավալումով է՛լ ավելի առաջ մղենք աշխատանքի արտադրողականության բարձրացումը, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձը դիմավորենք արտադրական պլանների կատարումով և գերակատարումով։

Բ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ՊԱՏԵՐԱԶՄԸ ԻՆԴՈՆԵԶԻԱՅՈՒՄ

Հոլանդական իմպերիալիստների պատերազմը՝ Ինդոնեզիայում գաղութային ռեժիմը վերականգնելու համար, փաստ է դարձել։ Հոլանդական գաղութացողների ռազմական ուժերը, զինված անգլո-ամերիկյան տեխնիկայով, առանց պատերազմ հայտարարելու, նետվել են Ինդոնեզյան ռեսպուբլիկան ջախջախելու համար։

Ներկայումս ակնհայտ է դարձել, որ հոլանդական կառավարության բազմիցս խոստումները՝ Ինդոնեզիային անկախություն տալու վերաբերյալ, թելադրված էին Հոլանդիայի ռազմական անզորությամբ, որի հետևանքով նա չէր կարողանում հենց միանգամից գաղութային պատերազմ ծավալել 70 միլիոնանոց ժողովրդի դեմ։ Այդ խոստումները միայն մի մանևր էին հոլանդական իմպերիալիստների կողմից, որոնք սպասում էին քաղաքական ավելի բարենպաստ իրադ-



րության։ 1947 թվականի մարտի 25-ին ստորագրված Լինգաջատյան համաձայնագիրը, ըստ որի Հոլանդիան փաստորեն ճանաչեց Ինդոնեզյան ռեսպուբլիկան Յավա, Սումատրա ու Մադուրա կղզիներում, և համաձայնվում էր Ինդոնեզիայի Միացյալ Նահանգների ստեղծմանը իբրև ապագա Հոլանդա-Ինդոնեզյան Միության բաղկացուցիչ մասը, մի վարագույր էր, որի հետևում հոլանդական կառավարությունը զինված ուժեր էր կուտակում Ինդոնեզիայում։ Ամերիկյան և անգլիական կառավարությունների միջամտությունը մի շարք երկրների ներքին գործերին՝ հօգուտ ռեակցիոն ուժերի, այսպես կոչված «տրումենյան դոկտրինայի» տարածումը Հարավ-Արևելյան Ասիայի երկրների վրա,—այս ամենը հոլանդական գաղութացողներին ոգեշնչում էր պայքարելու ընդդեմ Ինդոնեզյան ռեսպուբլիկայի, և հեշտացրեց նրանց ագրեսիան։

Ինդոնեզիայում մղվող պատերազմը միջազգային ռեակցիայի պատերազմն է, ընդդեմ ինդոնեզյան ժողովրդի, որը պայքարում է իր ազգային անկախության համար։ Այդ պատերազմը նախապատրաստում էին ոչ միայն հոլանդական, այլև անգլո-ամերիկ-

յան ռեակցիոն շրջանները։ 1946 թվականին,
երբ Ինդոնեզիայում անգլիական զորքեր գտն-
նվելու հարցը քննարկվում էր Միավորված
Ազգերի կազմակերպությունում, Բևինը ամ-
բողջ ուժով ձգնում էր արդարացնել այդ զոր-
քերի Ինդոնեզիայում գտնվելը, պատճառա-
բանելով, թե դա անհրաժեշտ է, մինչև որ
հոլլանդական զորքերը կկարողանան փոխա-
րինել նրանց։

Երկրի ազգային անկախության սկզբունք-
ները հաստատապես պաշտպանող Ինդոնեզ-
յան ռեսպուբլիկայի ամրապնդումը «վտան-
գավոր» է թվում նաև ամերիկյան կապիտալի
համար, որի էքսպանսիան ներկայումս տա-
րածվում է հումքի այդ ամենահարուստ շու-
կայի վրա։ Հոլլանդական գաղութացողները
համաձայն են այժմ իրենց եկամուտները
կիսելու ավելի հարուստ ամերիկյան մոնո-
պոլիստների հետ. Հոլլանդիայի կառավարու-
թյունը բազմիցս մատնանշել է, որ դոլլարի
փոխառությամբ ինքը համաձայն է ԱՄՆ-ին
թույլատրելու Ինդոնեզիա։ Ահա՝ թե ինչու.
չնայած այն մեծ հակասություններին, որոնք
գոյություն ունեն Ինդոնեզիայի բնական հա-
րստությունները շահագործելու ասպարե-
զում միմյանց հետ մրցող Անգլիայի ու



ԱՄՆ-ի միջև, նրանք միասնական են դեպի Ինդոնեզյան ռեսպուբլիկան իրենց թշնամա-կան վերաբերմունքի մեջ։

Ինդոնեզիայից հետ կանչելով իր բանակ-ները, անգլիական կառավարությունը չդա-դարեց սովորեցնել ու զինել հոլլանդական զորքերին։ Մասնավորապես Սինգապուրը դարձավ հիմնական բազա հոլլանդական զորքերին մատակարարելու համար, որոնց թիվը անընդհատ աճում էր Ինդոնեզյան կղզի-ներում։ Ինչպես բուն Հոլլանդիայում, այն-պես էլ Մալայայում անգլիական հրահանգիչ-ները վարժեցնում էին հոլլանդական բանակի մեծ մասին, որը ներկայումս մարտեր է մղ-ում Յավայում, Սումատրայում և Մադուրա-յում։ Անգլիայի զինվորական մինիստրի հայտարարությամբ, Անգլիան զինել է ավելի քան 60 հազար հոլլանդացիների։ Անգլիան մտադիր է Հոլլանդիային հանձնել նորագույն տիպի «Վեներբել» ավիակիրը, որ կառուցվել է 1945 թվականին։

Լայն հոսանքով Հոլլանդիա էր ուղարկվում ամերիկյան սպառազինություն։ Մարշալը հուլիսի 23-ի իր հայտարարության մեջ խոս-տովանեց, որ ԱՄՆ-ում վարժեցվել ու սպա-ռազինվել է հոլլանդական մի ամբողջ

բրիգադա։ Ճիշտ է, նա հայտարարեց, թե լենդ-լիզով Հոլանդիային տրամադրված է իբր թե աննշան քանակությամբ զենք—«ընդամենը միայն» 54 ռմբակոծիչ, 64 կործանիչ, 266 նռնականետիչ, 170 հրանոթ, 159 պնդացիր։ Սակայն՞ այդ թվերը բացահայտորեն չեն համապատասխանում իրականությանը։Հայտնի է, օրինակ, որ միայն Բատավիայում կենտրոնացված է 50-ից ավելի ամերիկյան «Շերման» տիպի տանկ։ ԱՄՆ-ից շարունակվում է սպառազինություն ստացվել։

Հոլանդական իմպերիալիստները Ինդոնեզյան ռեսպուբլիկային ներկայացնում էին ավելի ու ավելի լկտի պահանջներ։ 1947 թվականի մայիսի 27-ին նրանք հանդես եկան իրենց առաջին ուլտիմատումով։ Դրա կատարումը ըստ էության կնշանակեր, որ ինդոնեզյան ժողովուրդը պետք է հրաժարվի ծանր պայքարի գնով ձեռք բերած իր բոլոր նվաճումներից։

Հոլանդացիները պահանջում էին անհապաղ կազմել «համաինդոնեզյան» ֆեդերատիվ կառավարություն, որը պետք է ստեղծվեր «նիդերլանդական թագի ներկայացուցիչների կողմից, ինդոնեզացիների համագոր-



ծակցությամբ»։ Ուլտիմատումը նաև առաջարկում էր բուն Հոլանդիայում, գաղութների մինիստրությանը կից ստեղծել մի խորհուրդ, «որի մեջ ներկայացված կլինի Ինդոնեզիան։ Ինդոնեզիայի գործերի նկատմամբ գերագույն իշխանությունը կիրականացվի այդ խորհրդի հետ կոնսուլտացիայի միջոցով»։ Այս առաջարկների նշանակությունը հասկանալի կդառնա, եթե նկատի ունենանք, որ «ինդոնեզցիներ» ասելով ուլտիմատումի հեղինակները հասկանում էին ոչ միայն Ինդոնեզյան ռեսպուբլիկայի ներկայացուցիչներին, որի տերիտորիայում է ապրում կղզիների 70 միլիոն բնակչությունից 60 միլիոնը, այլ դրանց համահավասար նաև հոլանդացիների ստեղծած «Արևելյան Ինդոնեզիա», «Բոռնեո» և այլ մարիոնետային պետությունների «ներկայացուցիչներին»։

Ուլտիմատումի պայմանների համաձայն Ինդոնեզյան ռեսպուբլիկան պետք է զրկված լինի այլ պետությունների հետ ինքնուրույն հարաբերություններ պահպանելու հնարավորությունից։ Ինդոնեզցիները կարող են օգտագործվել դիվանագիտական աշխատանքում, բայց... «նրանք բոլորը պետք է գտնվեն

նիդերլանդական դիվանագիտական ծառայության մեջ»։

Վերջապես, Հոլանդիան պահանջում է լիովին լիկվիդացնել ռեսպուբլիկայի զինված ուժերը, և Ինդոնեզիայի պաշտպանության ամբողջ գործը հանձնել հոլանդական բանակի ձեռքը։ Ըստ էության Ինդոնեզիան պետք է նորից դառնա Հոլանդիայի գաղութը։

Ձգտելով խաղաղ ճանապարհով կարգավորել տարաձայնությունները Հոլանդիայի հետ, ռեսպուբլիկայի կառավարությունը գնաց էական զիջումների։ 1947 թվականի հունիսի 28-ին Ինդոնեզիայի պրեզիդենտ Սուկարնոն հրապարակեց հոլանդական ուլտիմատումի պատասխանը, որի մեջ ասվում էր. «Ռեսպուբլիկական և հոլանդական դելեգացիաները պետք է բանակցությունների միջոցով լուծեն Լինգաջատյան պայմանագրի կատարման պրոցեսում ծագող կարևորագույն պրոբլեմները։ Հարկավոր է անհապաղ ձեռնամուխ լինել ինդոնեզյան ժամանակավոր կառավարության ստեղծմանը։ Ռեսպուբլիկան չի առարկում, որ գեներալ-նահանգապետը դառնա ռեսպուբլիկայի և Ինդոնեզիայի մյուս մասերի ներկայացուցիչներից կազմվելիք կառավարության անդամներից մեկը։



Ռեսպուբլիկայի տերիտորիայում ռեսպուբլիկական կառավարությունը լիովին պահպանում է իր իրավունքները և տնօրինում է իր օրգանները։ Ուստի հոլանդական առաջարկը՝ անվտանգության պահպանման համար ընդհանուր ոստիկանություն ստեղծելու մասին, չի ընդունվում։ Ելնելով Լինգաջատիում կնքված պայմանագրից, ռեսպուբլիկական կառավարությունը նորից պնդում է հոլանդական կառավարության առջև, որպեսզի անհապաղ կրճատվի հոլանդական զորքերի թիվն Ինդոնեզիայում։ Այդ բանը կարող է ստեղծել վստահության մթնոլորտ և հիմք պայմանագրի կատարման համար»։

Ռեսպուբլիկական կառավարության պատասխանը անհապաղ ռեակցիա առաջացրեց... բայց ոչ թե հոլանդական կառավարության, այլ Ինդոնեզիայում ամերիկյան ներկայացուցչի կողմից։ Հենց նույն օրը, հունիսի 28-ին Բատավիայում ԱՄՆ-ի գլխավոր հյուպատոսը նոտա հանձնեց ինդոնեզյան ռեսպուբլիկայի կառավարությանը։ Մատնանշելով, թե Միացյալ Նահանգները «շահագրգռված են Ինդոնեզիայում տեղի ունեցող իրադարձություններով, քանի որ նա լուրջ դեր է խաղում միջազգային կայունու-

թյուն հաստատելու համար ինչպես տնտեսական, այնպես էլ քաղաքական հարաբերությունների մեջ», նոտան Ինդոնեզյան ռեսպուբլիկային առաջարկում էր անվերապահորեն ընդունել հոլլանդական ուլտիմատումը։

ԱՄՆ-ի այդպիսի բացարձակ միջամտությունը Ինդոնեզիայի ներքին գործերին, և հոլլանդական լիտի առաջարկների պաշտպանությունը նրա կողմից, ցնծություն առաջացրին Հոլլանդիայի ռեակցիոն շրջաններում։ Հուլիսի 1-ին հոլլանդական «Տրոուվ» թերթը գրում էր. «Ինչպես հաղորդեցին մեր թղթակցին ազդեցիկ շրջաններում, ամերիկյան նոտան լուրջ աջակցություն է ցույց տալիս հոլլանդական քաղաքականությանը։ ԱՄՆ-ի ճնշման տակ ռեսպուբլիկան հավանորեն կհամաձայնվի ֆեդերալ կառավարության ստեղծմանը Հոլլանդիայի սուվերենիտետի ներքո»։ Միայն «Դը Վաարհեյդ» թերթն էր գրում, թե ամերիկյան նոտան կոպիտ միջամտություն է հոլլանդա-ինդոնեզյան ներքին գործերին և «հանդիսանում է Տրումենի դոկտրինայի տարածումն Ինդոնեզիայի վրա»։

ԱՄՆ-ը բացահայտորեն խրախուսում էր ագրեսորին՝ Հոլլանդական իմպերիալիստնե-



րըն անցան վճռական գործողությունների։ Դրանից հետո Նիդերլանդական կառավարությունը պահանջեց անհապաղ կազմել «Ինդոնեզիայի ժամանակավոր կառավարություն», ըստ որում հոլլանդական թագի և ինդոնեզյան մարիոնետային «պետությունների» ավելի մեծ թվով ներկայացուցիչների մասնակցությամբ։ Նա Ինդոնեզյան ռեսպուբլիկայի կառավարությունից պահանջում էր վերադարձնել «օտարերկրյա սեփականությունը» և ստեղծել «համատեղ» ոստիկանական ուժեր, որոնք վերահսկեին ամբողջ ներքին կյանքը Ինդոնեզիայի տերիտորիայում։

Հաշվի առնելով ստեղծված իրադրությունը, ռեսպուբլիկայի կառավարությունը կրկին դիմեց նոր լուրջ զիջումների. Նա ճանաչեց հոլլանդական սուվերենիտետը այսպես կոչված անցման ժամանակաշրջանում, մինչև Ինդոնեզիայի Միացյալ Նահանգների ստեղծումը, համաձայնվեց վերադարձնել օտարերկրյա սեփականությունը, հրաժարվեց անցման շրջանում արտասահմանի հետ ինքնուրույն հարաբերություններ ունենալուց։ Բայց ռեսպուբլիկական կառավարությունը կտրականապես առարկում էր միացյալ ոստիկանություն ստեղծելուն, քանի որ դա հա-

կասում էր Լինգաջատյան համաձայնագրին, որով ճանաչվում էր ռեսպուբլիկական իշխանությունը Ցավա, Սումատրա և Մադուրա կղզիներում։ Հոլլանդական ոստիկանական ծառայության տարածումը ռեսպուբլիկական տերիտորիայի վրա, կնշանակեր ռեսպուբլիկայի լիկվիդացիա։

Ռեսպուբլիկականների հրաժարվելը համատեղ ոստիկանություն ստեղծելու առաջարկից, առիթ ծառայեց, որպեսզի հոլլանդական կառավարությունը հուլիսի 15-ին նոր ուլտիմատում ներկայացներ։ Այս անգամ հոլլանդական զավթիչները պահանջում էին արդեն ոչ թե «համատեղ ոստիկանություն, այլ հոլլանդական ոստիկանություն։ Պետք է ստեղծվի, ասվում էր ուլտիմատումի մեջ, հատուկ ոստիկանություն յուրաքանչյուր նահանգում, և այդ ոստիկանական ջոկատների նկատմամբ պետք է հաստատվի հոլլանդական ղեկավարություն։ Այն դեպքում, եթե ժամանակավոր կառավարությունն անհրաժեշտ համարի, այդ Ինդոնեզյան ջոկատները կլրացվեն հոլլանդական ջոկատներով»։ Երկրորդ՝ ուլտիմատումը պահանջում էր անհապաղ «դադարեցնել» բոլոր ռազմական գործողությունները, որոնք, ի դեպ, հրահր-



վում էին բացառապես հոլլանդական զորքերի կողմից, դադարեցնել «վնասակար պրոպագանդան» և ռեսպուբլիկական զինվորական ստորաբաժանումները հետ քաշել դեմարկացիոն գծից 6 մղոն դեպի խորքը։

Դեռ նախքան ուլտիմատումի ժամկետը լրանալը, 1947 թվականի հուլիսի 20-ին, առանց պատերազմ հայտարարելու, հոլլանդական զորքերը, ռազմական տեխնիկայի բոլոր տեսակների գործադրությամբ, սկսեցին ամենուրեք հարձակումը ռեսպուբլիկական տերիտորիայի վրա։ Ինդոնեզիայում պատերազմ սկսվեց, որը հոլլանդական կառավարությունը մինչև այժմ էլ կեղծավորությամբ անվանում է «սահմանափակ բնույթի ոստիկանական միջոցառումներ»։ Այդ անհեթեթությունը մերկացնում է նույնիսկ Ասսոշիեյտեդ Պրեսս գործակալության թղթակիցը, ռեսպուբլիկայի մայրաքաղաք Ջոկյակարտայից հուլիսի 22-ին հաղորդելով անգլիական բանակի նախկին փոխգնդապետ Ռետկլիֆի հայտարարությունը, որն այցելել էր ռեսպուբլիկական տերիտորիայի շատ վայրեր։ «Ռեսպուբլիկականների կողմից վերահսկվող տերիտորիայում,—ասվում է հայտարարության մեջ,—լիակատար կարգ ու կանոն է տիրում։ Ան-

հնեթեթություն է հոլլանդացիների ներկայիս պատերազմական գործողություններն անվանել ոստիկանական միջոցառումներ, որովհետև պարզապես գոյություն չունի որևէ անկարգություն, որը հարկ լիներ վերացնել»։

Ինդոնեզիայում մղվող պատերազմը վճռականորեն դատապարտվում է դեմոկրատական հասարակայնության կողմից բուն Հոլլանդիայում, որն իր արտահայտությունը գտավ բազմաթիվ գործադուլների ու բողոքի ցույցերի մեջ։ Համաշխարհային հասարակական կարծիքը խորապես զայրացած է։ Ինչ վերաբերում է ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող շրջանների դիրքին, ապա այդ մասին կարելի է դատել հետևյալ փաստերով։ ԱՄՆ-ի պետական քարտուղար Մարշալը հրաժարվեց արտահայտվել Ինդոնեզիայում մղվող պատերազմի, և այն դադարեցնելու նպատակով գործադրվող միջոցառումների մասին։ Անգլիայի արտաքին գործերի մինիստրը Բևինը հուլիսի 23-ին համայնքների պալատում պատասխանելով այն հարցին, թե նա ի՞նչ է մտածում «այդ գործը Միավորված ազգերի կազմակերպությանը» հանձնելու առթիվ, հայտարարեց. «Անկասկած, ես նախատեսում եմ այդ հնարավորությունը, բայց ես



պետք է ղեկավարվեմ փորձով։ Մի շարք հարցերի հանձնումը Անվտանգության Խորհրդի քննարկմանը, չհասցրեց դրանց վերջնական ու խաղաղ լուծմանը։ Հարցը ձգձգվում է վետոյի իրավունքի օգտագործման և ամեն տեսակի այլ տհաճ դժվարությունների հետևանքով»։

Իսկ ի՞նչ «վետոյից» է ներկայումս վախենում մինիստր Բևինը։ Ո՞վ կարող է վետո դնել Ինդոնեզիայում հոլլանդական իմպերիալիստների գործողությունները դատապարտելու և խաղաղությունը խախտողներին խստագույն կերպով պատժելու առաջարկի վրա։ Բևինի հայտարարությունը չի կարելի հասկանալ այլ կերպ, քան իբրև առարկություն Ինդոնեզյան հարցը Միավորված Ազգերի կազմակերպության քննարկմանը դնելուն։

Անվտանգության Խորհուրդը, որ կոչված է պաշտպանելու խաղաղությունը ժողովուրդների միջև, չի կարող անքաթող անել այն, որ Հոլլանդիան փորձում է խեղդել Ինդոնեզիայի 70 միլիոնանոց ժողովրդի ազատությունը։ Հանուն ամբողջ աշխարհի խաղաղության շահերի այդ փորձերը պետք է ջախջախվեն։

Ի. ՊԼԻՇԵՎՍԿԻ
(«Պրավդա»-ից)։

## „ՊԱՏԵՐԱԶՄԸ ԻՆԴՈՆԵԶԻԱՅՈՒՄ" ՀՈԴՎԱԾԻ ՄԵՋ ՀԱՆԴԻՊՈՂ ՕՏԱՐ ԲԱՌԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ

*ԷՔՍՊԱՆՍԻԱ*.— Լատիներեն բառ, որը նշանակում է ընդարձակում, տարածում (սահմանների, ազդեցության և այլն): Էքսպանսիա բառը գործածվում է, ցույց տալու համար իմպերիալիստական պետությունների ձգտումը՝ զավթելու նոր տերիտորիաներ ու գաղութներ:

*ՄԱՐԻՈՆԵՏԱՅԻՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ*.— Պետություն, որը կույր գործիք է մեկ այլ պետության ձեռքում:

*ՈՒԼՏԻՄԱՏՈՒՄ*.— Լատիներեն բառ. միջազգային հարաբերությունների մեջ նշանակում է վերջնական պահանջ, (վերջնագիր), որը մի պետություն ներկայացնում է մյուսին, սպառնալով, որ պահանջը չկատարելու



դեպքում անմիջապես կկիրառվեն ներգործման որոշակի միջոցներ, ընդհուպ մինչև պատերազմը:

*ՆՈՏԱ*.— Մեկ կառավարության պաշտոնական գրավոր դիվանագիտական դիմումը մեկ ուրիշ կառավարության:

*ՍՈՒՎԵՐԵՆԻՏԵՏ*.— Ֆրանսերեն բառ, որը նշանակում է ներքին գործերում պետության անկախությունը մեկ այլ պետությունից:

*ԴՈԿՏՐԻՆԱ*.— Ուսմունք, թեորիա:

*ԴԵՄԱՐԿԱՑԻՈՆ ԳԻԾ*.— Հաշտության կամ զինադադար կնքած երկու բանակների բաժանող գիծը:

*ՎԵՏՈ*.— Օրենսդիր հիմնարկի մի որևէ որոշման գործադրումը գերագույն իշխանությամբ արգելելու կամ կասեցնելու իրավունք: Բուրժուական երկրներում վետոն պատկանում է միապետին կամ պրեզիդենտին: ՍՍՌՄ-ում վետո գոյություն չունի:

---

Պատասխանատու խմբագիր
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 02789. Պատվեր 1027. Տիրաժ 9.600
Ստորագրված է տպագրության 19/VIII 1947 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան